Մ. Է. ՇԻՐԻՆՅԱՆ

# «ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ՎԱՐՔ»-Ը ԵՎ «ԴԱՇԱՆՑ ԹՈՒՂԹ»-Ը

*Թե՛ «Սեղբեստրոսի Վարք»-ը եւ թե՛ «Դաշանց Թուղթ»-ը մեզանում սակավ ուսումնասիրված երկերից են։ Թերեւս դրա գլխավոր պատճառներից մեկն այն է, որ երկուսն էլ կեղծ գրվածքներ են։ Առասպելաբանույթ այդ գործերում պատմական փաստը եւ լեգենդն այնքան են շաղկապված, որ իրական պատմությունը մեզ է հասնում որպես հրաշապատում, իսկ լեգենդը պատմություն է դառնում։ Որպես կանոն, այդ միահյուսվածությունը դժվար է տարանջատել։*

*Ժամանակակից գիտությունն այդպիսի ավանդազրույցների նկատմամբ խիստ քննադատական վերաբերմունք ունի եւ դրանք համարում է պատրանք, ժխտելով մեկնաբանության «էվհեմերական»[1] մեթոդը։ Այնուամենայնիվ, նման մոտեցումը լիովին չի բացառում, որ այդ լեգենդները կարող են պարունակել որոշ պատմական ստույգ փաստեր։ Ըստ իս, կեղծ գրվածքներից կարելի է քաղել տվյալ դարաշրջանը բնութագրող եւ, ինչու չէ, նույնիսկ որոշ խնդիրներ բացատրող բազմազան հետաքրքրական տեղեկություններ եւ առնվազն անարդարացի կլիներ ժխտել դրանց ուսումնասիրությունը։ Պակաս կարեւոր չեն նաեւ այդպիսի երկերի երեւան գալու դրդապատճառների հետազոտումը։*

*Այսպես, «Սեղբեստրոսի Վարքի» եւ «Դաշանց Թղթի» համար ուշագրավ է ընդգծել երկու գրվածքների հռոմեամետ բնույթը, ինչպես նաեւ առաջինի դեպքում թարգմանության համար ընտրությունը, իսկ երկրորդի դեպքում ստեղծման դրդապատճառները։ Մեծ հետաքրքրություն է հարուցում նաեւ դրանց միջեւ առկա ընդհանրություններն ու կապը, որի մասին եւ խոսվում է*

---

[1] Առասպելների մեկնաբանության մեթոդ (անվանումը կապված է Էվհեմեր արքայի անվան հետ), ըստ որի ժողովրդական բանահյուսության մեջ առկա նյութը, մեծ մասամբ իրական եղելության արտահայտություն է. օրինակ, հունական աստվածներից շատերն իրականում հերոսներ են համարվում։

*ներկայացված հոդվածում:*

*«Պատմութիւն վարուց սրբոյն Սիղբեստրոսի եպիսկոպոսի Հռովմայ» հունարեն թարգմանությունը, ըստ Երուսաղեմի Սրբոց Յակոբեանց վանքի ձեռագրատան թիվ 2014 գրչագրի հիշատակարանի տվյալների, կատարված է Գրիգոր Ջարոփորեցու կողմից եւ թվագրվում 678 թվով*[2]*: Այս թվագրումը համարվում է ստույգ եւ հաստատվում է նաեւ Ռ. Վարդանյանի կողմից կիրառված չափազանց հետաքրքրական նորամուծությամբ՝ թարգմանական բնագրերի ժամանակը որոշվում է ըստ հիշատակարաններում օգտագործված տոմարական եղանակների*[3]*: Սերտորեն կապված լինելով Սոկրատ Սքոլաստիկոսի «Եկեղեցական պատմության» հետ եւ նույնիսկ միահյուսվելով այդ երկի հայերեն թարգմանության համառոտ խմբագրությանը, «Վարք»-ը կազմում է, այսպես կոչված, Փոքր Սոկրատի բաղադրիչ, սկզբնական մասը:*[4]

*«Վարք Սեղբեստրոսի» հայերեն թարգմանությունը կատարվել է հունարենից, որը, իր հերթին, «Գործք Սեղբեստրոսի» (Acta Silvestri) վավերական համարվող լատիներեն սկզբնագրի*[5] *թարգմանությունն է, ավելի ստույգ՝ խմբագրությունը: Լատիներեն տեքստը պապական փաստաթղթերի ժողովածու է՝ ստացված նվիրատվությունների վերաբերյալ, սակայն պարունակում է նաեւ որոշ կենսագրական տեղեկություններ Սեղբեստրոսի մասին:*

*Հունարեն տարբերակը, որից կատարվել է նաեւ ասորերեն թարգմանությունը, ընդհակառակը, չի ներառում այդ փաստաթղթերից եւ ոչ մեկն ու մանրամասն պատմում է Սեղբեստրոսի կյանքի եւ գործունեության մասին: Թերեւս, այս պատճառով երկը չի արժանացել մասնագետների առանձնահատուկ ուշադրության: Սկիզբ առնելով բազմաթիվ ավանդազրույցներից ու լեգենդի բնույթ ունեցող գրվածքներից, հունարեն խմբագրությունը, իր հերթին, հիմք է ծառայել Հռոմի առաջնությունը փառաբանող հետագա մի*

---

2 Մ. Տէր-Մովսէսեան, Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւն եւ Պատմութիւն վարուց սրբոյն Սիղբեստրոսի եպիսկոպոսի Հռովմայ, Վաղարշապատ 1897, տե՛ս նաեւ՝ Բ. Սարգսեան. Տեսութիւն Սեղբեստրոսի Պատմութեան եւ Մ. Խորենացւոյ աղբերաց, Վենետիկ 1893:

3 Ռ. Վարդանյան, Հայոց տոմարական եղանակը. թարգմանական բնագրերի ժամանակը, Երեւան 1993: M. Shirinian, The Armenian Versions of *Vita Silvestri*" (10-th Anniversary Conference of AIEA, September 1-5, 1993, London) - Armenian Perspectives, ed. by N. Awde, Curzon, Caucasus World, 1997, pp. 69-75:

4 Մեծ ու Փոքր Սոկրատների ինչպես եւ «Սեղբեստրոսի վարք»-ի մասին, դրանց միջեւ եղած խառնաշփոթի եւ առաջարկվող նոր թվագրման մասին տե՛ս՝ М. С. Ширинян, Краткая редакция древнеармянского перевода *Церковной истории* Сократа Схоластика, Византийский Временник, 43 (1982), сс. 231-241:

5 Առաջին հրատարակությունը 1479 թ. կատարել է Բ. Մոմբրիտիուսը, երկրորդը՝ Դյուշենը (Le Liber Pontificalis. Texte, Introduction et commentaire par l'Abbe L.Duchesne. Publiées par Cyrille Vogel. Paris, 1957, 1, 2, 3).

քանի կեղծիքների՝ Իսիդորյան «Դեկրետներ»-ի, «Կոստանդնի Նվիրատվության» (Donatio Constantini) երեւան գալու համար: Վերջինս, դեռեւս 15-րդ դարում, Լորենցո Վալլայի[6] կողմից կեղծ է համարվել:

«Վարք Սեղբեստրոսի» եւ հայերեն տարբերակներին նվիրված գրականությունը սակավաթիվ է[7]: Լատիներեն բնագիրն առաջին անգամ հրատարակվել է Մոմբրիտիուսի հավաքածուում[8]: Այն ընդգրկված է նաեւ Դյուշեի՝ «Liber Pontificalis»-ում[9]: Ոչ լատիներեն երկը, ո՛չ էլ դրանից կատարված թարգմանություններն ու խմբագրությունները չունեն քննական բնագրեր: Վերջինիս դեպքում, հավանաբար, պատճառն այն է, որ այս տեքստի ձեռագրերի թիվն անցնում է 300-ից: Սակայն, ինչպես տեղեկացնում է Գ. Ֆաուդենը, մի շարք հոդվածներով հանդես եկած Վ. Պոհլկամպը պատրաստում է լատիներեն բնագրի քննական հրատարակությունը[10]:

Հունարեն տեքստի ճակատագիրն ավելի անմխիթար է: 17-րդ դարում երկի հունարեն տեքստի Ֆ. Կոմբեֆիի հրատարակությունը[11], կարծես, աննկատ մնաց հետազոտողների համար: Երկու դար անց, արձագանք գտնելով հայագետների միջավայրում, այն վերատպվեց Բ. Սարգիսյանի կողմից՝ հայերեն տարբերակներից մեկին զուգահեռ[12]: Խիստ հետաքրքրական եւ կարեւոր այդ հրատարակությունը, որի ընդարձակ առաջաբանում ակնարկված ու հաճախ լուծված են շատ խրթին հարցեր (օրինակ, թարգմանության մեջ առկա եւ հունարեն բնագրում բացակայող մի աղբյուրի՝ Եվսեգնիոսի վկայության մեծ հատվածի մատնանշումը), այդուամենայնիվ, զերծ չէ թերություններից:

---

6 Ch.B. Coleman, The Treatise of Lorenzo Valla on the Donation of Constantine, Renaissance Society of America, 1993.

7 Այդ գրականության ցանկը տե՛ս M.E. Shirinian, Parallel Aligned Text and Bilingual Concordance of the Armenian and Greek Versions of *Vita Silvestri*, pp. 69-75, М. С. Ширинян, Краткая редакция древнеармянского перевода *Церковной истории* Сократа Схоластика, Византийский Временник, 43 (1982), Москва, 239-241: Համեմ. նաեւ Ստ. Մալխասյանի Սեղբեստրոսի վերաբերյալ արված ծանոթագրությունները՝ Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, աշխարհաբար թարգմանությունը Ստ. Մալխասյանի, Երեւան, 1981, էջ 504-506:

8 G.Eis, Die Quellen für das Sanctuarium des Mailänder Humanisten Boninus Mombritius, Eine Untersuchung zur Geschichte der grossen Legendensammlungen des Mittelalters, Germanische Studien 140, Berlin 1933.

9 Liber Pontificalis բառացի՝ «Գիրք Քահանայապետական»:

10 G. Fowden, The last days of Constantine: Oppositional versions and their infuence, Princeton 1994, էջ 154, ծան. 43, W. Pohlkamp, Textfassungen, literarische Formen und geschichtliche Funktionen der römischen Silvester-Akten, Francia 1992 (19), SS.115-196.

11 F. Combefis, Illustrium Christi Martyrum lecti triumphi, Vetustis Graecorum Monumentis confignati. Parisiis, 1660.

12 Բ. Սարգսեան. Տեսութիւն Սեղբեստրոսի Պատմութեան եւ Մ. Խորենացւոյ աղբերաց, Վենետիկ 1893:

Ակնառու թերություն է, որ արժանահիշատակ Բ. Սարգիսյանը հունարեն տեքստի դիմաց զետեղել է ոչ թե հայերեն թարգմանությունը, այլ վերջինիս խմբագրությունը, որն էապես տարբերվում է բուն հունարան թարգմանությունից, ուստի եւ՝ հունարեն բնագրից: Որպես հետեւանք հայերեն ու հունարեն տեքստերը ներկայանում են միանգամայն տարբեր:

Խնդրո առարկա երկի ուսումնասիրության համար ինչ-որ չափով աննպաստ էր հայերեն «Վարք»-ի արծարծումը՝ գլխավորապես Մովսես Խորենացու հետ կապված խնդիրների տեսանկյունից: Մի կողմից, հենց դրա շնորհիվ էր, որ հրատարակվեցին Խորենացու առեղծվածի հետ կապված բազմաթիվ անտիպ երկեր, սակայն մյուս կողմից, այդ գրվածքները հետազոտվեցին հիմնականում միայն վերոհիշյալ հարցի ներքո, ինչից տուժեցին այդ աշխատություններում արծարծված խնդիրների պարզաբանումները:

Դա հիմք հանդիսացավ ձեռնարկելու համար «Վարք Սեղբեստրոս»-ի հայերեն եւ հունարեն տարբերակների մի նոր հրատարակություն (ոչ քննական, քանզի եւ՛ հունարեն, եւ՛ անգամ հայերեն ձեռագրերը մատչելի չեն):[13]

«Վարք Սեղբեստրոսի» լատիներեն եւ հունարեն տեքստերին ու դրանց հետ կապված հարցերին է նվիրված Վ. Լեւիսոնի հիմնավոր հետազոտությունը[14]: Երկին ու հայ պատմագրության հետ դրա կապերին անդրադարձել են Մ. վան Էսբրուկը[15] եւ Ռ. Թոմսոնը[16]:

«Վարք Սեղբեստրոսի» հունարան թարգմանության ու դրա խմբագրության հետ սերտորեն առնչվում է, ըստ իս, այսպես կոչված «Դաշանց Թուղթ» կեղծ գրվածքը, որը թեեւ հրատարակվել է մի քանի անգամ, սակայն ուսում-

---

[13] M.E. Shirinian, Parallel Aligned Text and Bilingual Concordance of the Armenian and Greek Versions of *Vita Silvestri* երկհատորյա հրատարակության առաջին գիրքը պարունակում է ընդարձակ առաջաբան, հայերեն (թե՛ թարգմանությունը, թե՛ դրա խմբագրությունը) ու հունարեն (մի ճանի ձեռագրի բաղդատության հիման վրա) տեքստերը եւ ծանոթագրություններ: Երկրորդ հատորը տրամադրված է երկի համաբարբառին ու մի ճանի ցանկերին: Այդ հատորի աշխատանքը կատարված է Ց. Վայտենբերգի համահեղինակությամբ:

[14] W. Levison, "Konstantinische Schenkung und Silvester-Legende", Miscellanea Francesco Ehrle, Studi e Testi, Bibliotheca Apostolica Vaticana, Roma 1924.

[15] M. van Esbroeck. Legends about Constantine in Armenian. Classical Armenian Culture, ed. Th. J. Samuelian, (Armenian Texts and Studies 4), University of Pennsylvania, 1982, pp. 79-101.

[16] Moses Khorenats'i. History of the Armenians. Translation and Commentary on Literary Sources by R. W. Thomson. Cambridge, Mass., London, 1978, R. W. Thomson, Constantine and Trdat in Armenian Tradition, Acta Orientalia, tomus L, fasciculi 1-3, 1997, pp. 277-289, R. W. Thomson, The Crusaders through Armenian Eyes, Dumbarton Oaks, Washington, D.C. 2001, pp. 71-82. Ռ. Թոմսոնը, հետեւելով Աշ. Հովհաննիսյանին, դաշինքի պատմությունը համարում է «մի զրույց հանդիսավոր այն ընդունելության մասին, որին մեր քրիստոնեության առաջին դարում արժանացել էր հեթանոս Տրդատ I-ը, քրիստոնեահալած Ներոն կայսրի կողմից» (Ա. Հովհաննիսյան, Դրվագներ, 1957, էջ 68):

նասիրվել է նեղ, զուտ դավանաբանական տեսանկյունից: Գրվածքի հոմեանետ ուղղվածությունը մշտապես պայմանավորել է երկի նկատմամբ եղած գիրքորոշումը: Ոչ-կաթոլիկներն այն համարել են անվավեր, կեղծ մի փաստաթուղթ[17], իսկ կաթոլիկները պնդել են, որ ստույգ ու վավերական գրվածք է կապված Հռոմի եւ Հայաստանի միջեւ եղած «սիրո եւ միաբանության» (unitas et concordia) ավանդության հետ[18]: Ժամանակ առ ժամանակ այդ ավանդության «վերակենդանացման» գլխավոր շարժառիթը հիմնականում եղել է քաղաքական: Հռոմի եւ Հայաստանի միջեւ կնքված դաշինքը միշտ հիշվել է (ըստ որում ոչ միայն հայերի կողմից) քաղաքական անհրաժեշտության ի հայտ գալու դեպքում: Այդ կեղծ փաստաթղթի «վերակենդանացումը» հայերի համար փրկության միջոց էր թվում դժվարին քաղաքական կացության խնդիրները լուծելիս:

Մասնավորապես, 17-րդ դարի երկրորդ կեսին, երբ Հռոմի եկեղեցին Ֆրանսիայի դաշնակցությամբ պայքարում էր «Ռեֆորմացիա»-ի դեմ, ջանալով նվազեցնել Մեծ Բրիտանիայի եւ Հոլանդիայի ազդեցությունն Արեւելքում, նման մի փաստաթղթի խիստ անհրաժեշտությունն առաջացավ: Գրվածքի «վերակենդանացումը» ձեռնտու էր նաեւ հերթական բարդ քաղաքական իրավիճակում հայտնված հայերին: Հավանաբար, դա էր պատճառը, որ հենց այդ ժամանակ, Իտալիայում փոքր ընդմիջումներով հայտնվեցին երկի մի քանի հրատարակություններ:

Բնագրի editio princeps-ը (առաջին հրատարակությունը), Հովհաննես Հոլովի կողմից նկատելիորեն ազատ կատարված իտալերեն թարգմանությամբ, լույս տեսավ 1683 թ. Վենետիկում[19]: Հրատարակությունը հայտնաբերել է Անասյանը[20] ՄՄ թիվ 2272 ձեռագրում, որտեղ այն կցված է գրչագրին[21]: Նույն վերնագրով հաջորդ հրատարակությունները երեւան եկան

---

17 Մ. Օրմանեան, Հայոց եկեղեցին եւ իր պատմութիւնը, վարդապետութիւնը, գրականութիւնը ու ներկայ կացութիւնը: Կոստանդնուպոլիս, 1912, էջ 15:

18 Հարկ է նշել, որ կան նաեւ բացառություններ. օրինակ՝ Կոգեանը, լինելով կաթոլիկ, դեմ է այս ավանդությանն ու «Դաշանց Թուղթ»-ը համարում է կեղծիք (Լ. Ս. Կոգեան, Հայոց եկեղեցին, Բեյրութ 1961, էջ 86-88):

19 Իտալերեն թարգմանության վերնագիրն է. *Lettera dell'Amicitia e dell'Unione di Constantino gran Cesare, e di S. Silvestro Sommo Pontefice (sic!), e di Tridade Re dell' Armenia, e di S.Gregorio Illuminatore della Natione armena scritta nell' Anno del Signore 316. In Venetia, 1683. Appresso Michiel' Angelo Barboni. Con Licenza de' Superiori.*

20 Տե՛ս Հ. Անասյան, XVII դարի ազատագրական շարժումները Արեւմտյան Հայաստանում, Երեւան 1961, էջ 51:

21 ՄՄ, թիվ 2272, 215ա-236ա (այս ձեռագրում կան նաեւ այլ տպագիր երկեր): Գուցե այս պատճառով է, որ Զարպհանալյանի (Գ. Զարպհանալեան, Հայկական մատենագիտութիւն, Վենետիկ 1883, էջ 148-149) եւ Թոմսոնի (R.W. Thomson, *A Bibliography of Classical*

1690-ին եւ նույն տեղում[22], 5 տարի անց՝ նորից Վենետիկում[23], հետո դարձյալ Վենետիկում 1700-ին[24]: Այդ հրատարակությունների հայտնվելն Իտալիայում, թերեւս, պայմանավորված էր գրվածքի նկատմամբ Հռոմի ունեցած մեծ հետաքրքրությամբ: Նման վերաբերմունքն արտացոլված է նաեւ «De Propaganda Fide»-ի («Հավատո պրոպագանդա») գործունեության մեջ, որի ականավոր ջատագովներից էր հայագետ Կ. Գալանոսը: Ի թիվս այլ հետազոտությունների[25], նա լատիներեն թարգմանեց նաեւ «Դաշանց թուղթ»-ը[26]: 1824 թ. Կոստանդնուպոլսում Ջանիկ Ամիրան հրատարակեց Ագաթանգեղոսի «Պատմություն»-ը, որին հավելված էր «Դաշանց թուղթ»-ը: Հրապարակումը բազում վեճերի առիթ հանդիսացավ հայագետների միջեւ: Լույս տեսան աղբյուրի վերաբերյալ եւս երկու իրարամերժ հրատարակություններ՝ «Դաշանց Թղթի ստուգութեան հաստատութիւն»-ը[27] եւ «Դաշանց Թղթի քննութիւնն ու հերքումը»[28]:

Այս երկին անդրադարձել եւ ուշագրավ եզրակացություններ են արել նաեւ Մ. Չամչյանը[29], Մ. Օրմանյանը[30], Ա. Հովհաննիսյանը[31], Հ. Անասյանը[32], Լ. Ս. Կոգեանը[33], Ռ. Թոմսոնը[34], Գ. Ուլուհոջյանը[35]: Սույն հոդվածը ավարտված եւ

---

*Armenian Literature to 1500 A.D.* (Corpus Christianorum , Turnhout: Brepols, 1995, p. 149) մատենագիտական ցուցակներում այն չի հիշատակվում:

22 Այս հրատարակությունը, հայերեն եւ իտալերեն տեքստերով, երեւի առաջինի վերահրատարակումն է:

23 Lettera dell'Amicitia e dell'Unione, In Venetia, 1695. Appresso Bortoli, con Licenza dei Superiori. Հրատարակությունը ինձ համար մատչելի չէր: Ըստ Զարբհանալյանի (Զարբհանալյան, 1883, էջ 149) այն պարունակում է միայն հայերեն տեքստը, բայց Թոմսոնը նշում է նաեւ իտալերեն թարգմանությունը (Thomson, Bibliography, p. 149):

24 Սույն հրատարակության մասին տեղեկացել ենք Ա. Հովհաննիսյանից (Ա. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, Գիրք I-ին, Երեւան 1957, էջ 80):

25 C. Galanus, *Conciliatio ecclesiae Armenae cum Romana*, Pars I, Rome 1690. Նույն թվին հետազոտությունը հրատարակվեց հայերեն թարգմանությամբ:

26 Autographum Amoris et Concordiae - C. Galanus: J. D. Mansi. *Sacrorum conciliorum nova et amplissima collectio*, Reprint, Graz, 1960, II, p. 461.

27 Դաշանց Թղթի ստուգութեանն հաստատութիւն, երկասիրութեամբ Մատթէոս, սրբազան Կաթողիկոս ամենայն Հայոց, Ճռաքաղ, Մոսկուա, 1860(1), էջ 237-244, 253-260:

28 Կ. Վ. Շահնազարեանց, «Դաշանց» թղթի քննութիւնն ու հերքումը», Պարիզ, 1862 (=K.V. Chahnazarian, Réfutation de la prétendue alliance entre s. Grégoire et s. Sylvestre, Lutetiae Parisiorum 1862):

29 Մ. Չամչեանց, Պատմութիւն Հայոց, հտ. Ա, Վենետիկ, 1784, 636-642:

30 Մ. Օրմանեան. Հայոց եկեղեցին եւ իր պատմութիւնը, վարդապետութիւնը, գրականութիւնը ու ներկայ կացութիւնը, Կոստանդնուպոլիս, 1912, էջ 15:

31 Ա. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, Գիրք I-ին, Երեւան 1957, էջ 58-80:

32 Հ. Անասյան, XVII դարի ազատագրական շարժումները Արեւմտյան Հայաստանում, Երեւան 1961, էջ 49-52:

33 Կոգեան, 1961, էջ 86-87:

տպագրության փուլում էր, երբ լույս տեսան Գ. Ուլուհոջյանի եւ Հր. Բարթիկյանի հոդվածները[36], ինչի հետեւանքով էլ նշված աշխատանքները մանրամասնորեն չեն քննարկված այստեղ: Հր. Բարթիկյանի հոդվածը, թերեւս, ցայժմ հարցի վերաբերյալ ամենահետաքրքրական ուսումնասիրությունն է: Ծավալուն այս հոդվածում հեղինակն առաջարկել է սրամիտ մի մոտեցում, որի շնորհիվ, կարծես թե, բացատրվում են ուսումնասիրվող երկում առկա եւ՛ ստույգ վավերական տեղեկությունները, եւ՛ կեղծիքները: Այսինքն՝ հոդվածագիրը համարում է, որ «Դաշանց Թուղթ»-ը բաղկացած է երկու՝ վավերական եւ կեղծ մասերից, ընդ որում հնարավոր է, որ նրա կողմից թվագրված 4-րդ դարի 20-ական թվականներով վավերական բնագիրը կազմված է եղել լատիներենով: Ուշագրավ է նաեւ Հր. Բարթիկյանի առաջ քաշած այն գաղափարը, թե դաշինքը կնքվել է ոչ թե Հռոմում, այլ Նիկոմիդիայում:

Հարկ է նշել նաեւ, որ վերջերս Եվրոպայի Կենտրոնական համալսարանում Զ. Պողոսյանի պաշտպանած ատենախոսությունը[37] ոչ միայն «Դաշանց Թուղթ» երկի խորագնին եւ համապարփակ ուսումնասիրությունն է, այլեւ երկի գիտա-քննական հրատարակության նախնական փորձ: Այն, համալրվելով մինչեւ պաշտպանությունը ատենախոսին անմատչելի ձեռագրերի տվյալներով, կառաջարկվի ընթերցողին:

Սեղբեստրոս պապի անձն առանձնահատուկ նշանակություն ունի Հռոմ կատարած ենթադրյալ այցի պատմության մեջ: Դաշինքի մասին խոսելիս, հայ հեղինակները, բացի Ագաթանգեղոսից, հիշում են Սեղբեստրոսին: Վերջինիս անունը հաճախ է հանդիպում հայկական աղբյուրներում ո՛չ միայն դաշինքի հետ քննարկվող հարցերի առնչությամբ: Օրինակ, հայոց ավանդության մեջ Սեղբեստրոսի անունը սերտորեն կապված է Նիկիայի ժողովի հետ: Կարելի է ենթադրել, որ հենց այդ դաշինքի պատճառով է, որ հայ հեղինակներն այդպիսի ուշադրության են արժանացրել Հռոմի պապին: Սակայն այդ պարգեւը

---

[34] R. W. Thomson, Constantine and Trdat in Armenian Tradition, Acta Orientalia, tomus L, fasciculi 1-3, 1997, pp. 277-289, R.W. Thomson, The Crusaders through Armenian Eyes, Dumbarton Oaks, Washington, D.C. 2001, pp. 77-82.

[35] G. Uluhogian, *Un Tardo apocrifo armeno relative a Costantino il Grande: la* Lettera dell'amicizia e dell'unione, in la *Lettera dell'amicizia e dell'unione,»* in *Bizantinistica* 5 (2003), 369-385.

[36] Հր. Բարթիկյան, «Դաշանց թուղթ». կազմը, ստեղծման ժամանակը, հեղինակն ու նպատակը, ՊԲՀ, N 2, Երեւան, 2004, էջ 65-116:

[37] Doctoral dissertation by Zaroui Pogossian: *A Revised-Diplomatic Edition, and a Historical and Textual Investigation of "Letter of Love and Concordance between the Emperor Constantine the Great and Pope Sylvester and the King of the Armenians Trdat the Great and St. Gregory the Illuminator"*. The Critical Edition, Historical Analysis and Textual Investigation, ELTE-CEU, Medieval Library, Budapest 2004.

համար պետք է քննարկել մեզանում առկա Սեղբեստրոսի վերաբերյալ նյութը:

«Սեղբեստրոսի վարք»-ի համեմատ հունարեն[38] տարբերակը կոչված էր հաստատելու Հռոմի առաջնությունը եւ Հռոմի պապի՝ Սեղբեստրոսի ձեռքով Կոստանդին կայսեր մկրտվելու հանգամանքները: Կոստանդին կայսեր մկրտության պատմությունն այնպես է շաղախված հրաշապատումներով, որ հաճախ դժվար է պատմականը սահմանազատել լեգենդայինից: «Պատմություն»-ն ունի արեւելյան եւ արեւմտյան տարբերակներ, որոնց բացատրությունները հիմնականում դավանաբանական ու քաղաքական նպատակներ են հետապնդում: Առանց բոլոր տարբերակները քննարկելու, խառնիխուռն ու փոփոխվող տվյալներից անհնար է հասկանալ եղելությունը:

Վաղ բյուզանդական պատմիչները կա՛մ չեն հիշատակում Կոստանդնին մկրտողի անունը, կա՛մ էլ նշում են Եվսեբիոսին՝ Նիկոմիդիայի արիոսական եպիսկոպոսին: Նկատվում է, որ հետագայում միտում է եղել հրաժարվելու Եվսեբիոս Նիկոմիդացու տարբերակից, որպեսզի առաջին քրիստոնյա կայսրը ներկայանա ուղղափառություն դավանող: 6-րդ դարում, օրինակ, Եվագրիոսը եւ Թեոդոր Անագնոստեսը (Վերծանողը) խոսում են Կոստանդին կայսեր մկրտության մասին Նիկոմիդիայում առանց նշելու մկրտողի անունը[39]: Թեոդոր Անագնոստեսը հայտնում է նաեւ արեւմտյան պատմիչների հայտնած տեղեկությունները առ այն, որ կայսրը մկրտվել է Հռոմում: Առաջին պատմիչը, որը նույն՝ 6-րդ դարում, վկայում է կայսեր մկրտությունը Սեղբեստրոսի կողմից, Հովհան Մալալան է[40]:

7-րդ դարում, «Զատկական ժամանակագրություն»-ում (Chronicon Paschale), Կոստանդին կայսեր մկրտությունը վերագրվում է Եվսեբիոս Կոստանդնուպոլսեցուն: «Ժամանակագրություն»-ը, ինչպես եւ «Վարք»-ի հունարեն տարբերակները, Կոստանդնին համարում են Կոստանդի ապօրինի որդի: 9-րդ դարում, Թեոփանես ժամանակագիրը վճռականորեն բողոքարկում է այդ հայտարարությունը: Ներկայացնելով մկրտության երկու տարբերակները՝ Եվսեբիոս Նիկոմիդացու եւ Սեղբեստրոսի կողմից, նա եզրակացնում է, որ Կոստանդնին Հռոմում մկրտել է Սեղբեստրոսը:[41]

Մկրտության պատմության արեւմտյան տարբերակը, որը մինչեւ 6-րդ դար համահունչ է վաղ բյուզանդական պատմիչների վարկածին, առաջին

[38] «Վարք»-ը թարգմանվել է հենց հունարեն, թերեւս, ավելի համոզիչ թվալու նկատառումով:

[39] G.Ch.Hansen, Theodoros Anagnostes Kirchengeschichte, Berlin: Akademie, 1971, SS., 2,15, 5,25, 43,25, И. С. Чичуров, Место «Хронографии» Феофана в ранневизантийской историографической традиции. (IV-начало IX в.). В кн. Древнейшие государства на территории СССР. Москва 1981, с. 100.

[40] Чичуров, 1981, с. 102.

[41] Чичуров, 1981, с. 102.

քրիստոնյա կայսեր մկրտիչ է համարում Եվսեբիոս Նիկոմիդացուն: Հետագայում, Հռոմն ընդունում է Սեղբեստրոսի տարբերակն ու ամրապնդում այն կեղծ փաստաթղթերով, իր քաղաքական նկրտումների համար կարեւորագույն խաղաքարտ դարձնելով Կոստանդնի՝ Հռոմում մկրտվելու վարկածը:

«Վարք Սեղբեստրոսի» թե՛ հունարեն, թե՛ հայերեն տարբերակները, մեկը մյուսին լրացնելով, կարեւոր նշանակություն ունեն բնագրագիտական որոշ խնդիրների լուծման համար: Հունարեն տեքստի համար, հատկապես, անգնահատելի է հայերեն թարգմանության հունաբան լեզվի առկայությունը: Այն հաճախ թույլ է տալիս ճիշտ կողմնորոշվելու բազմազան տարընթերցումների մեջ ու նույնիսկ տեղ-տեղ վերականգնելու սկզբնական շարադրանքը: Հայերեն թարգմանությունը կարող է նաեւ terminus ante quem ծառայել հունարեն տեքստի համար, քանի որ հունարեն թարգմանության ստեղծման ժամանակն անհայտ է, եւ մասնագետները երկի թվագրման համար առաջարկում են 6 - 9-րդ դարերը:

Չնայած «Սեղբեստրոսի վարք»-ի վարկածային եւ լեգենդային բնույթին, երկը, այնուամենայնիվ, կարեւորագույն նշանակություն ունի Հայաստանի, Հռոմի, Բյուզանդիայի պատմության եւ այդ երկրներում քրիստոնեության հռչակման, դավանաբանական խնդիրների հետ կապված բազում հարցերի լուսաբանման համար հետեւյալ պատճառներով: «Վարք»-ի հենքը կրկնում է Ագաթանգեղոսի գրքի ու «Թադդեի վարդապետության» բովանդակությունը: Դա Աբգար եւ Տրդատ թագավորների ու Կոստանդին կայսեր նույն դարձի պատմությունն է: Այս գրվածքների միջեւ կարելի է բազում զուգահեռներ անցկացնել. Գրիգոր Լուսավորչի ու Սեղբեստրոսի նկարագրությունների, նրանց կյանքի, գործունեության ու կրած չարչարանքների, Տրդատի ու Կոստանդնի հիվանդության, համապատասխանաբար Գրիգոր Լուսավորչի ու Սեղբեստրոսի ձեռքով նրանց հրաշաբար բուժման, Աբգար թագավորի ու Կոստանդնի առաքյալների միջոցով բարի լուր ստանալու եւ պատկերներում առաքյալների ճանաչման վերաբերյալ: Նույն ընդհանրությունները բերվում են նաեւ այլ քրիստոնեական աղբյուրներում (օրինակ, վրաց դարձում՝ Միհրանը):

Հնարավոր է նաեւ ենթադրել, որ «Վարք Սեղբեստրոսի» երկն ուշագրավ էր հայերի համար, քանզի այն պատմում էր Հայաստանի բավականին փառահեղ եւ ծաղկուն շրջանի մասին, երբ Հայաստանը բարիդրացիական հարաբերությունների մեջ էր Հռոմի հետ:

Այս ամենն է, որ բացատրում է հայերի հետաքրքրությունը քննարկվող հռոմեամետ գրվածքի հանդեպ: Հունարեն տարբերակը ոչ միայն թարգմանվել, այլեւ խմբագրվել է, ենթարկվելով դավանաբանական փոփոխությունների

*«Փոքր Սոկրատ»-ում:*

*Ի դեպ, այս առումով, նշենք նաեւ երկի նկատմամբ հետաքրքրության առաջացման մեկ այլ հնարավոր պատճառ. «Վարք Սեղբեստրոսի» հունարեն տարբերակը ոչ միայն համեմատ էր, այլեւ հակարյուզանդական ուղղվածություն ուներ (հենց այդ նպատակով էլ ստեղծված էր հունարեն բնագիրը): Օրինակ, թե՛ հունարեն տարբերակը եւ թե՛ «Վարք»-ի հունարան թարգմանությունը չեն նշում Կոստանդնուպոլիսը որպես աթոռանիստ մայրաքաղաք*[42]*: Ուստի հակարյուզանդական այդ միտումը հայերին կարող էր հետաքրքրել նաեւ իրենց հակաքաղկեդոնական պայքարում: Թերեւս, ավելի ստույգ կլիներ նշված պատճառը՝ հակարյուզանդական դիրքորոշումը, դիտելու որպես խմբագրության՝ «Փոքր Սոկրատ»-ի ստեղծման, կարեւորագույն պարագաներից մեկը:*

*Ասվածի ապացույց կարող է ծառայել նաեւ այն փաստը, որ թեեւ հունարեն տեքստում Հայաստանի վերաբերյալ չկա եւ ո՛չ մի տեղեկություն, սակայն «Վարք»-ը, մասնավորապես «Փոքր Սոկրատ»-ի կազմում ընդգրկված դրա համառոտ տարբերակը, տարածված է եղել մեզանում եւ անգամ օգտագործվել որպես դասագիրք:*

*Հակառակ հունարեն տարբերակի «լռությանը» Հայաստանի վերաբերյալ, լատիներեն բնագրում առկա է մի հատված, որում հիշատակվում է Armenia տեղանունը: Թվարկելով արեւելյան գավառների նվիրատվությունները, որոնք Կոստանդինը հանձնեց (obtulit*[43]*) Հռոմի եկեղեցուն, ասվում է.*

*"per Aegyptum, sub civitatem Armenia:*

*possesio Agapi, quod donavit Augusto Constantino;*

*possesio Passinopolimse, praest. sol. DCCC, charta decadas CCCC, piper medemnos I. crocum lib C, storace lib.CL, aromata cassia lib.CC, oleu nardinu lib CCC, balsamu lib.C, linu saccus C, cariophylu lib. CL, oleu Cypriu lib.C..."*[44]

*Առաջին հայացքից նախադասությունն աղճատված է թվում: Անհասկանալի այս համատեքստում տարօրինակ է Եգիպտոսի եւ Հայաստանի միատեղ*

---

[42] Սակայն խմբագրության մեջ այն առկա է (Սոկրատ, էջ 693):

[43] Liber Pontificalis, v.3, p. 177.

[44] Liber Pontificalis, v.3, p. 178. Այս տեղը ունի տարընթերցումներ՝ v.l. 2: Egyptum A1C2- civitatem B13C13D, civitate cet.- Armeniam A1: Armentam C1-- որոնք չեն օժանդակում հասկանալու արտահայտությունը, չնայած քերականորեն ավելի ճիշտ են: Ի դեպ՝ Armentam ընթերցումը, կարող է ընկալվել որպես նույն Armeniam-ի տարբերակը, i եւ t տառերի շփոթության պատճառով: Որոշ մասնագետներ առաջարկում են նոր տարընթերցում մտցնել՝ Armenia բառի փոխարեն կարդալ Hermonthis (Davis, 1989, p. 20), որը հավանական է՝ կառուցված է C1 ձեռագրի տարընթերցման նմանությամբ, սակայն ավելի անհասկանալի է եւ անընդունելի:

հիշատակումը: Armenia բառը համաձայնեցված չէ հայցական հոլովով արտահայտված civitatem-ի հետ, այդ իսկ պատճառով թարգմանության համար նախընտրել եմ վերցնել A1 ձեռագրի ընթերցումը, որը ներկայացնում է Armenia բառը հայցական հոլովով (Armeniam):

Ի՞նչ է նշանակում sub civitatem Armeniam: Civitas, civitatis բառն ունի «քաղաքացիություն, քաղաքացիության իրավունք, քաղաքացի, քաղաք, պետություն, հասարակություն, ժողովուրդ ու համայնք» իմաստները: Այստեղ բառի նշանակությունը դժվար է որոշել ըստ համատեքստի, քանզի նախորդ թվարկումներում առկա են, օրինակ, sub civitatem Antiochiam, sub civitatem Alexandriam[45] ձևերը, որտեղ civitatem բառը պետք է հասկանալ «քաղաք» իմաստով «քաղաքի ներքո, մոտ, շրջակայքում գտնվող»: Per Aegyptum կարող է նշանակել «ամբողջ Եգիպտոսի», «Եգիպտոսով», «Եգիպտոսի միջով կամ միջոցով»: Ըստ այդմ, նախադասությունը կարող է մեկնաբանվել հետևյալ տարբերակներով.

1. «ողջ Եգիպտոսից Արմենիա քաղաքը՝ Ագապիոսի կալվածը, որ նվիրեց Կոստանդին Օգոստոսին[46], Պասինոպոլիմ կալվածը ...» և հետո թվարկում է կատարված նվիրատվությունները («թուղթ, պղպեղ, յուղ» և այլն) ու դրանց քանակությունները: Այս դեպքում ստացվում է, որ Armenia-ն եգիպտական քաղաքի անվանում է, ինչը զարմանալի է, եթե ոչ անհասկանալի:

2. Թարգմանության երկրորդ տարբերակում, նախադասության սկիզբը կհնչի այսպես՝ «ամբողջ Եգիպտոսի, Հայոց համայնքը (կամ, բառացի՝ Հայաստանի քաղաքացիության ներքո գտնվողները՝...»: Բնագրում առկա է նման իմաստով ևս մի օրինակ. sub civitate Aegyptia[47]՝ «Եգիպտոսի քաղաքացիության, իրավասության ներքո գտնվողները»: Ստացվում է, որ հեղինակը նկատի ունի Եգիպտոսում ապրող հայերին, որոնց մասին չի պահպանվել որևէ տեղեկություն:

3. Ամենահավանական թարգմանությունն է. «Եգիպտոսով (կամ Եգիպտոսի միջոցով), Հայաստան պետությունը՝...», այն է՝ մատնանշվում է Հայաստանի հետ հարաբերության աշխարհագրական հնարավոր ճանապարհը, որը անցնում էր Եգիպտոսի տարածքով: Նշենք, որ աշխարհագրական իմաստով վերջին տարբերակը չպետք է զարմացնի, քանի որ հենց քննարկվող հատվածից հետո խոսվում է Եփրատ գետի ավազանի տարածքում գտնվող Ասորիքի 7 գավառներից մեկի՝ Եփրատեսիայի մասին: Այսինքն՝ եթե հետևենք համա-

---

[45] Liber Pontificalis, v.3, p. 177.
[46] Կամ «Կոստանդին Օգոստոսի միջոցով», քանզի Augusto Constantino կարող է լինել և տրական, և գործիական հոլով:
[47] Liber Pontificalis, v.3, p. 177.

տեքստին, ապա դժվար չէ նկատել, որ թվարկված արեւելյան գավառները, որոնք իրենց նվիրատվությունները մատուցեցին Հռոմում կառուցված «Երանելի Պետրոսի բազիլիկային»[48], հաջորդում են միմյանց ըստ աշխարհագրական դիրքորոշման՝ Անտիոք, Ալեքսանդրիա, Հայաստան, Եփրատեսիա: Սակայն Հայաստանի դեպքում «Գործք»-ի հեղինակը նշում է «Եգիպտոսի միջոցով կամ միջով» (per Aegyptum), թերեւս հասկանալով, որ դա Հռոմի ու Հայաստանի միջեւ ամենակարճ եւ ընդունված ճանապարհը չէր: Այս տեղեկությունը հնարավորություն է ընձեռում կարծելու, որ 4-րդ դարի սկզբում, երբ Հայաստանից Փոքր Ասիայի միջով (դարան մտած բռնակալ Մաքսենտիոսի պատճառով) դեպի Հռոմ անհնար էր ճանապարհորդել, հայերը Հռոմի հետ կարող էին հաղորդակցվել Եգիպտոսի միջոցով: Ուստի Տրդատի ու Գրիգոր Լուսավորչի Հռոմ ուղեւորության վերաբերյալ հին ավանդագրույցն այնքան էլ անվավեր չէ:

Պակաս ուշագրավ չէ հետաքրքրական զուգահեռներ պարունակող նախադասության երկրորդ մասը, ուր նշվում է. «Ագապիոսի կալվածը, որ նվիրեց Կոստանդին Օգոստոսին, Պասինոպոլիմսե կալվածը...»: Դա նշանակում է, որ Հայաստանում եղել են անձինք, որոնք Հռոմի Պետրոս առաքյալի տաճարին կալվածքներ են նվիրել եւ այլ նվիրատվություններ արել: Սա նույնպես արտառոց տեղեկություն է:

Թվում է, որ եւ՛ Ագապես կամ Ագապիոս անունը (possessio Agapi), եւ՛ possessio Passinopolimse մատնանշված են Ագաթանգեղոսի երկի նույն ժամանակահատվածին վերաբերող հետեւյալ հատվածում.

«Որ յաստիճան եպիսկոպոսութեան լինէին արժանի կալոյ, առեալ ձեռնադրութիւն ի նմանէ. որոց առաջնոյն՝ Ալբիանոս անուն, որ ապա կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու. երկրորդին՝ Եւտաղիոս, որ ի կողմանս վայրացն Բասենոյ կացեալ լինէր հովիւ. երրորդն՝ Բասոս. չորրորդն՝ Մովսէս. հինգերորդն՝ Եւսեբիոս. վեցերորդն՝ Յովհաննէս. եօթներորդն՝ Ագապես...»[49]

Այսինքն՝ հավանական եմ համարում, որ բնագրի possessio Passinopolimse բառակապակցությունը նույն տեղանունն է, ինչ եւ «ի կողմանս վայրացն Բասենոյ»: Աղբյուրներում այն առկա է նաեւ Բասեն, Փասիան եւ հատկապես Պասեն ձեւերով:[50] Ուստի ստացվում է, որ Ագապես[51] եւ Եվթալիոս

---

[48] Liber Pontificalis, v.3, p. 176.

[49] Ագաթանգեղոս, Հայոց Պատմություն, Ա. Տեր-Ղեւոնդյան, Երեւան 1983, էջ 470:

50 Այս տեղանվան մասին տե՛ս՝ Adontz, 1970, pp. 255-8, 260, 262, 267, 269, 459 n.47, 467n. 20, 87*, 89*, 93*, 102*.

եպիսկոպոսները, ինչպես եւ արեւելյան հայտնի մյուս քրիստոնեական կենտրոնները (Աղեքսանդրիան, Անտիոքը), որոշակի նվիրատվություններ են արել Հռոմի Ս. Պետրոսի տաճարին: Հայտնի չէ, թե որքանով է ստույգ այդ երկում հաղորդված սույն տեղեկությունը, սակայն չափազանց հետաքրքրական է Armenia տեղանվան հիշատակումը բավականին վաղ լատինական բնագրում:

Բերված նկատառումները գայթակղիչ են Հռոմի ու Հայաստանի միջեւ եւս մեկ առնչություն գրանցելու առումով, բայց կարոտ են ավելի խոր ուսումնասիրման:

Վերադառնանք այն հարցին, թե ինչ են հաղորդում հայկական աղբյուրները Սեղբեստրոսի մասին: Արդեն նշվեց, որ Սեղբեստրոսի անունը զարմանալիորեն բացակայում է Ագաթանգեղոսի երկում: Զարմանալիորեն, քանզի հետագա ավանդապատումները հիմնված են գլխավորապես հենց այդ երկի տվյալների վրա: Ի միջի այլոց, Սեղբեստրոսի անունն առկա է «Ս. Գրիգորի վարք»-ի հունարեն տարբերակում: Բացի այդ, Մովսես Խորենացին, անդրադառնալով Կոստանդնի մկրտության պատմությանը, այն ներկայացնում է գրեթե կրկնելով «Սեղբեստրոսի վարք»-ի համապատասխան դրվագը, որը վերջանում է այսպես. «...որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»[52]: Խորենացու «Պատմության» մեջ հայտնի են նման այլ հղումներ[53], ըստ որում, Ագաթանգեղոսի «Հայոց պատմության» մեջ նշված հաղորդումը հաճախ բացակայում է, ինչպես, օրինակ, այս դեպքում: Որոշ մասնագետներ համարում են, որ այս հատվածներն առկա էին Ագաթանգեղոսի սկզբնագրում: Արդարացիորեն այդպես էր կարծում նաեւ Ա. Տեր-Ղեւոնդյանը, հիմնվելով Ագաթանգեղոսի «Պատմության» արաբական թարգմանության նորահայտ ձեռագրերի վրա:[54]

Այս եւ Ագաթանգեղոսի գրքի հետ կապված մի շարք խնդիրներ (օրինակ, միջնադարում երկի հանդեպ եղած աշխույժ հետաքրքրությունը կամ Ագաթանգեղոսի երկի, «Ադդայի վարդապետության» ու «Սեղբեստրոսի վարք»-ի միջեւ ակնհայտ ընդհանրությունները), դեռեւս չունեն վերջնական պատասխաններ:

Հետագա հայ հեղինակները, օրինակ, Սամվել Անեցին, Ուխտանեսը,

51 Այսպես անունը հայկական աղբյուրներում վկայված է նաև որպես Խարիր (զարմանալի է, ինչու ո՞չ Հարիր, միգուցե՞ հունարենից է վերցրած)՝ փաստորեն հունարեն բառի արաբերեն թարգմանությամբ:

52 Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, աշխարհաբար թարգմանությունը Ստ. Մալխասյանի, Երևան, 1981, էջ 227:

53 Մովսես Խորենացի, նշվ. հրատ., էջ 202, 203, 212, 219, 221, 234:

54 Ա. Տեր-Ղևոնդյան, Ագաթանգեղոսի արաբական խմբագրության նորահայտ ամբողջական բնագիրը. ՊԲՀ 1973 N1(60), հմմտ. նաև՝ Н. Марр, Крещение армян, грузин, абхазов и аланов, С.-Петербург 1905, сс. 63-64:

Սամվել Կամրջաձորեցին, Մովսես կաթողիկոսը, Գրիգոր Արշարունը, Վարդան Այգեկցին, Վանական Վարդապետը, Կիրակոս Գանձակեցին, Վարդան Բարձրբերդցին, Թովմա Մեծոփեցին եւ այլք, խոսելով Կոստանդնի մկրտության մասին, նշում են Սեղբեստրոսի անունը: Սեղբեստրոսի նկատմամբ թվարկած հեղինակների հետաքրքրությունը պայմանավորված է մի շարք հարցերով, ուստի նրանց հայտնած տեղեկությունները բազմաբնույթ են: Օրինակ, Սեղբեստրոսի անունը Գրիգոր Արշարունը հիշատակում է «պահոց» օրերը քննարկելիս («Իսկ առ նորս եւ պահել Սեղբեստրոս, զի մկրտեացէ զԿոստանդիանոս»[55]): Սամվել Կամրջաձորեցու համար վերջինս «հաւատոյ» սյուներից մեկն է: Ի դեպ, «Սիւնք հաւատոյ»-ի ցանկում Սեղբեստրոսը միակ Հռոմի պապը չէ: Ցանկում նշվում են նաեւ Կղեմես I (sedit 88-97), Հուլիոս I (sedit 337-52), Դամասոս I (sedit 366-83) եւ Կելեստինոս I (sedit 422-32)[56]:

Հետաքրքրական է նաեւ, թե ինչ սկզբունքով է առաջնորդվել Սամվել Կամրջաձորեցին (կամ նրան նախորդող հեղինակները[57]), այս պապերի անուններն ընտրելիս: Ցանկում նշված մյուս անունները, մեծ մասամբ հայրապետներ ու եպիսկոպոսներ են, հիմնականում կարեւորագույն աթոռանիստ քաղաքներից՝ Երուսաղեմի եպիսկոպոս Մակարը, Աղեքսանդրիայի եպիսկոպոս Դիոնիսիոսը, Կոստանդնուպոլսի եպիսկոպոս Նեկտարիոսը եւ այլք: Այդ ցանկից տեսանելի է, որ բոլոր ընդգրկված անձինք ապրել եւ գործել են մինչեւ Քաղկեդոնի ժողովը եւ նրանց դավանանքը համընկնում է Նիկիական «հավատո հանգանակին»: Նրանցից շատերը հավատի վերաբերյալ նշանակալի թղթեր են գրել, ոմանք էլ այդ թղթերն առաքել են Հայաստան: Այսինքն՝ ակնհայտ է, որ հիմնական սկզբունքը դավանաբանական է, սակայն ընտրության սկզբունքը մինչեւ վերջ հստակ չէ:

Կային եւ այլ հեղինակներ, որոնց երկերը, դավանաբանական տեսանկյունից, ընդունվում եւ թարգմանում էին հայերի կողմից: Արդ, ինչո՞ւ են ընդգրկված Եվսեբիոս Կեսարացին եւ Գրիգոր Սքանչելագործը, սակայն բացակայում են, ասենք, Բարսեղ Կեսարացու կամ Սոկրատ Սքոլաստիկոսի անունները: Պարզ չէ նաեւ Հռոմի պապերի ընտրությունը. արդյոք պատճառն այն չէ՞, որ Հայոց եկեղեցին այդ պապերի, ինչպես նաեւ ցանկում հիշատակված մյուս հայրապետների ու եպիսկոպոսների օրոք չի ունեցել դավանաբանական կամ այլ կնճռոտ խնդիրներ: Ինչեւէ, մեր թվարկության առաջին չորս դարերի հայերեն աղբյուրների բացակայության պատճառով, ի թիվս այլ խնդիրների,

[55] ՄՄ, թիվ 1879, 289բ:

56 Գիրք թղթոց, երկրորդ հրատարակություն, Երուսաղէմ, 1994, էջ 555-556:

57 Հավանական է, որ նշված անունների ավանդական ցուցակը գոյություն ուներ արդեն Սամվել Կամրջաձորեցուց առաջ:

*քիչ են հետազոտված նաեւ Հայաստանի հարաբերություններն այլ երկրների ներկայացուցիչների հետ:*

*Սեղբեստրոսի անձը հետաքրքրություն է ներկայացրել բոլոր քրիստոնյաների համար՝ եկեղեցական ծիսակատարության մեջ նրա ունեցած մեծ ներդրման շնորհիվ: Շաբաթվա օրերի հեթանոսական անունների անվանափոխությունն եւս կապված է նրա հետ, ինչը վկայված է Սեղբեստրոսի «Վարք»-ում: Նույն թեմային անդրադարձել են Ուխտանեսը եւ Վանական Վարդապետը: Վերջինս գրում է հետեւյալը.*

*«Իսկ աւր եւ տիւ Մովսէս անուանեաց առաջին եւ երկրորդ, եւ զմինն առանձինն՝ շաբաթ, եւ հեթանոսք Կռանոս. եւ այլ մի ըստ միոջէքն եւ զեւթն՝ Ափրոդիտեայ: Եւ հաւատալ մեծին Կոստանդիանոսի՝ սուրբն Սեղբեստրոս առեալ զանուն շաբաթուն եդ ի վերայ իւրաքանչիւրոցն, ասաց՝ միաշաբաթ, երկշաբաթ, այլաւքն հանդերձ:»*[58]

*Հայերի համար Սեղբեստրոսի անունը հատուկ նշանակություն ուներ եւ այլ տեսանկյունից: Սկսած 12-րդ դարից նրա մասին առկա տեղեկությունները հիմնականում առնչվում են «Դաշանց թղթի»*[59] *հետ: Այդ ժամանակից ի վեր, հայ հեղինակները, խոսելով Հռոմի հետ հարաբերությունների մասին, հիշատակում են այդ երկը: Կիրակոս Գանձակեցին, օրինակ, քաջ տեղյակ է «Դաշանց թղթին» եւ մի քանի անգամ հիշատակելով Հայաստանի ու Հռոմի միջեւ կնքված դաշինքը, խոսում է հին պայմանագիրը վերստին նորոգելու մասին.*

*«...սուրբն Գրիգորիոս՝ յետ լուսաւորելոյ նորա զՀայաստան աշխարհս աստուածգիտութեամբ եւ ամենայն ուղղափառ կարգօք եւ օրէնսդրութեամբ, եւ ձեռնադրելոյ եպիսկոպոսս աւելի քան զչորս հարիւր եւ երեսուն, գնալ եղեւ նմա եւ մեծի արքային Տրդատայ ի Հռոմ ի տեսութիւն նշխարաց սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի, եւ մեծ թագաւորին Կոստանդիանոսի, եւ սրբոյ հայրապետին Սեղբեստրոսի, դնել ուխտ եւ դաշինս ի մէջ*

58 Լ. Խաչիկյան, Աշխատություններ, հատ. Ա, Երեւան 1995, հտ..I, էջ 185: Այս տեղեկությունը փաստում է, որ Վանական Վարդապետը ծանոթ է Սեղբեստրոսի անվան հետ կապված օրերի վերանվանման ավանդությանը: Այստեղից, սակայն, պարզ չէ, արդյո՞ք Վանական Վարդապետը օգտվել է «Սեղբեստրոսի վարք»-ի՞ց, թե՝ այլ աղբյուրից, քանզի հատվածը տարբեր է «Վարք»-ում ներկայացվածից (մանավանդ Վանականի կողմից օգտագործած «միաշաբաթ» («կիրակի» բառի փոխարեն) տերմինը, որը առկա էր արդեն Նոր Կտակարանում):

59 «Դաշանց թղթի» վերաբերյալ այստեղ ներկայացված դրույթները հիմնականում արտացոլված են հետեւյալ հոդվածներում M. E. Shirinian, "The Letter of Love and Concord" Between Rome and Armenia: A Case of Forgery from the Period of Crusaders, Orientalia Lovaniensia Analecta 125, East and West in the Crusader States, Context-Contacts-Confrontations, III, (Acta of congress held at Hernen Castle in September 2000), ed. K.Ciggaar, H. Teule, A.A. Bredius Foundation, Peeters, Leuven 2003, pp. 79-99:

խրեանց:»[60]

«....սկսեալ ի սրբոյն Սեղբեստրոսէ Հռոմայ հայրապետէն»[61]

«....զի սուրբն Գրիգոր եւ Սեղբեստրոս աղ օրհնեցին»[62]

«....զհին դաշինսն Տրդատայ եւ սրբոյն Գրիգորի եւ Կոստանդիանոսի կայսեր եւ Սեղբեստրոսի հայրապետին վերստին նորոգեցին առ սովաւ:»[63]

Վարդան Վարդապետ Բարձրբերդցին եւս խոսում է «Դաշանց թղթի» մասին, Տրդատի ու Կոստանդնի Երուսաղեմ կատարած ուղեւորությունը նկարագրելիս.

«Ասեն դարձեալ թէ երկու ինքնակալքն Կոստանդիանոս եւ Տրդատոս, եւ պապքն երկոքին Գրիգորիս եւ Սեղբեստրոս եկին ի Հռոմայ յԵրուսաղէմ եւ վիճակաւ բաժանեցին զտնօրինական տեղիսն. եւ Հայոց անկաւ սնարքն եւ Գողգոթա, եւ Սուրբ Կարապետն եւ Սուրբ Յակոբն: Եւ սուրբն Գրիգոր կանթեղ կախեաց ի սնարսն, եւ խնդրեաց զիջումն լուսոյն յԱստուծոյ ի նշան յատութեան իւրոյ ամիամի...եւ յաղագս այնորիկ կոչեցաւ Լուսաւորիչ:»[64]

Հռոմի քաղաքականության, Կիլիկիայի հայկական թագավորության ու հարեւան պետությունների մասին հետաքրքրական տվյալներ պարունակող այս երկի վերաբերյալ հարկ է նշել հետեւյալը: «Թուղթ սիրոյ եւ միաբանութեան մեծի կայսերն Կոստանդիանոսի եւ սրբոյն Պապին Սեղբեստրոսի եւ Տրդատայ Հայոց արքայի, եւ սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի» խորագրի ներքո պահպանված այս անվավեր գրվածքը մեզ է հասել բազմաթիվ ձեռագրերով, տարբեր խմբագրություններով: Այն կցվել է նաեւ Ագաթանգեղոսի գրվածքի ուշ խմբագրություններին: Գիտնականները համամիտ են, որ «Դաշանց թուղթ»-ը կեղծիք է[65], քանզի դրանում կան այնպիսի իրողությունների եւ անցքերի նկարագրություններ, որոնք կարող են վերաբերել միայն խաչակիրների ժամանակին:

«Դաշանց թուղթ»-ը հավանաբար գրվել է 11-13-րդ դարերում, Կիլիկիայում, միարարական միջավայրում: Այդ դարերում, հատկապես Ֆրանկների

---

[60] Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երեւան, 1961, էջ 10-11:

[61] Կիրակոս Գանձակեցի, էջ 5:

[62] Կիրակոս Գանձակեցի, էջ 12:

63 Կիրակոս Գանձակեցի, էջ 118:

64 Սոփերք հայկականք, Վենետիկ, 1853, հտ. Ե, էջ 78-79:

65 Դա ակնհայտ էր արդեն 17-րդ դարում, տե՛ս՝ *Histoire critique de la creance et des coutumes des nations du Levant*, publiée par le Sr. De Moni, Francfort 1631, p. 134: Տե՛ս՝ նաև Շահնազարեանց, 1862, էջ 11sq, Հովհաննիսյան, 1957, էջ 58-80, Անասյան, 1961, էջ 49-52, Կոգեան, 1961, էջ 86-87, Thomson, 1997, pp. 277-289:

կայսրությունում, այդօրինակ կեղծ թղթերը չափազանց տարածված էին: Դրանցից մեկը՝ «Կոստանդնի նվիրատվություն» (Donatio Constantini) կոչված հայտնի կեղծ փաստաթուղթը, բովանդակությամբ խիստ նման է «Դաշանց թղթին», սակայն դրանում բացակայում է հայկական նյութը: Երկու գրվածքի հիմքում ընկած է նույն գաղափարը՝ Հռոմի առաջնության փառաբանումը: Կոստանդին կայսեր անունից գրված երկու երկերն էլ հաղորդում են, որ Հռոմի եկեղեցուն ու պապին լայն արտոնություններ ու հարուստ կալվածքներ են շնորհվում, իսկ «Դաշանց թղթի» դեպքում նաև հայոց կաթողիկոսին:

Ի տարբերություն բազմիցս ուսումնասիրված «Կոստանդնի նվիրատվության» (Donatio Constantini), «Դաշանց թուղթ»-ը չի արժանացել գիտական մանրազնին քննության և չունի քննական հրատարակություն: Թեպետ, այն հրատարակվել է բազմիցս, սակայն մեզ հանգամանքներն են եղել դավանաբանական մոտեցումները:

«Դաշանց թղթի» բովանդակութունն Ագաթանգեղոսի համապատասխան հատվածի ավելի ճոխացված (ավելի շեշտված է պապի փառաբանությունը) տարբերակն է: «Թղթում» ասվում է, որ Հռոմի պապը գլխավոր առաքյալների հետնորդն է, որին հանձնված են Արեւմուտքից մինչեւ Արեւելք բնակվող բոլոր քրիստոնյա ազգերին իշխելու երկնային եւ երկրային բանալիները[66]: Այս գրվածը չափից ավելի հիշեցնում է «Կոստանդնի նվիրատվության» հետեւյալ բառերը.

*"et tibi dabo <u>claves regni caelorum;</u> quodcumque ligaveris <u>super terram,</u> erit ligatum et in caelis, et quodcumque solveris s<u>uper terram, erit solutum et in caelis.</u>"*[67]‹

«Եւ քեզ կտամ երկնային արքայության բանալիները. յուրաքանչյուր (դաշինք) որ կնքես երկրի վրա, կլինի կնքված նաեւ երկնքում, ինչ (հարց) որ կլուծես երկրի վրա, կլինի լուծված երկնքում եւս»:

Ըստ «Դաշանց թղթի»՝ պապի իշխանությունը տարածվում էր ոչ միայն բոլոր հայրապետների, այլեւ կայսեր վրա: Կոստանդինն այստեղ տալիս է յոթ հայրապետների անուններ, որոնք «մեր օրերի» աշխարհի յոթ սյուներն են՝ Սբ. Սեղբեստրոսն՝ Արեւմուտքում, Սբ. Գրիգորն՝ Արեւելքում, Սբ. Անտոնիոսը՝ հարավում, Սբ. Նիկողայոսը՝ հյուսիսում, Սբ. Մակարն՝ Երուսաղեմում, Սբ. Հակոբը՝ Մծբինում եւ Սբ. Եփրեմը՝ Եդեսիայում:[68] «Թղթում» նույնչափ

---

[66] Շահնազարեանց, 1862, էջ 12, ՄՄ թիվ 2272, 222բ:

[67] Coleman, 1993, p. 232.

[68] ՄՄ, թիվ 2272, 226բ, Շահնազարեանց, 1862, էջ 23՝ այս տարբերակում Սբ. Մակարիոս Երուսաղեմացու եւ Սբ. Եփրեմ Եդեսիացու անունները չկան, սակայն ՄՄ, 3078 (211ա) ձեռագիրը նշում է բոլոր անունները:

գովաբանված են նաեւ Հայոց կաթողիկոսն ու արքան, եւ նրանց անհավատալի արտոնություններ ու կալվածքներ են շնորհված:[69] Ըստ այս փաստաթղթի՝ կայսրը թագադրել է Տրդատին եւ դիմել է նրան «փառաւոր ֆրերս մեր Տրդատես»[70]: Թերեւս միայն «ֆրեր» ֆրանսերեն բառը, որը միակը չէ այս տեքստում, բավական է «դաշինք»-ի գրվելու ուշ ժամանակի մասին գաղափար կազմելու համար: Սեղբեստրոսը, համաձայն «Դաշանց թղթի», ձեռնադրում է Գրիգոր Լուսավորչին, որն այստեղ անվանված է «կենդանի վկա»[71], ինչպես նաեւ պապի գլխավոր ներկայացուցիչը Փոքր Ասիայում[72], իսկ նրա աթոռը հավասար է հայտարարվում Երուսաղեմի, Անտիոքի եւ Աղեքսանդրիայի աթոռներին[73]: Ի դեպ, «կենդանի վկա» հորջորջը, ինչպես, ընդհանրապես, հայ մատենագրության մեջ անվանում էին Գրիգոր Լուսավորչին, վկայված է Ներսես Շնորհալու վերաբերյալ եւս, ինչից կարելի է ենթադրել, որ Գրիգոր Լուսավորչի փոխարեն «Դաշանց թղթում» նկատի է առնված Շնորհալին:

Ուշադրության է արժանի նաեւ «Դաշանց թղթի» լեզուն. այն գրված է միջին հայերենով եւ լի է փոխառություններով՝ լատիներենից (պրետորին[74] praetorium, սիգնաիք[75] signis, բուլկանիայ[76] vulcanus), հունարենից (խրուսկէֆալոք[77] χρυσοκέφαλοις, պրոտայ պապս[78] πρωτόπαπο", գպրոտոն Արմենիան[79] πρώτη 'Αρμενία), ֆրանսերենից (շամբրն[80] (=chambre), ֆրէր[81] frère). Հանդիպում են նաեւ փոխառություններ պարսկերենից եւ թաթարերենից:[82] Այս փոխառությունները կարեւոր տեղեկություններ են հաղորդում «Թղթի» հեղինակի մասին. նրա հայերենի իմացությունը կատարյալ չի

69 Շահնազարեանց, 1862, էջ 16-18, 27, հմմտ. ՄՄ, թիվ 3078, 214ա:

70 Այլ տեղերում Տրդատը անվանված է «եղբայր», որը որպես կանոն օգտագործված է գովեստաբանական մակդիրներով, Շահնազարեանց, 1862, էջ 20, ՄՄ, թիվ 2272, 224բ:

71 Շահնազարեանց, 1862, էջ 12, ՄՄ, թիվ 2272, 218բ, 222բ: Այսպես է անվանում Գրիգոր Լուսավորչին եւ Ներսես Շնորհալին:

72 Շահնազարեանց, 1862, էջ 25, ՄՄ, թիվ 2272, 228բ:

73 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 227բ-228բ: Ասված է, որ Գրիգոր Լուսավորչին Սեղբեստրոսը շնորհեց «պապի, պատրիարքի եւ հայրապետի» կոչումները:

74 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 227բ:

75 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 219բ:

76 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 227բ:

77 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 219բ:

78 Շահնազարեանց, 1862, էջ 24, ՄՄ, թիվ 2272, 227բ, *crusokevfaloi"* բառացի «ոսկեգլուխ», այսինքն՝ ոսկն բազ կրող:

79 Շահնազարեանց, 1862, էջ 18, ՄՄ, թիվ 2272, 223բ:

80 ՄՄ թիվ 3078 (216ա) ֆրանսերեն բառը փոխարինված է «ճմամբարն» անհասկանալի բառով:

81 Շահնազարեանց, 1862, էջ 14, ՄՄ, թիվ 2272, 224բ, հմմտ. նաեւ 217բ - «գիրս զայս գրեցաք միմեանց ֆրերս»:

82 Շահնազարեանց, 1862, էջ 92-97:

եղել, բայց նա տիրապետել է մի քանի այլ լեզուների: Հավանական է, որ նման մեկը պետք է ապրած լիներ Կիլիկիայում: Սակայն հիմնական պատճառը, որ գրվածքը պետք է ստեղծված համարել Կիլիկիայում, անշուշտ Կիլիկիայի հռոմեամետ քաղաքականությունն էր:

Հարց է ծագում, արդյոք քննվող փաստաթուղթը կազմվել է միայն հայերի՞ նախաձեռնությամբ, ու արդյոք միա՞յն Ագաթանգեղոսի գիրքն է հանդիսանում դրա աղբյուրը. թերեւս՝ ո՛չ, հետեւյալ պատճառներով: Նախ՝ գլխավոր աթոռանիստ քաղաքները հիշատակելիս, հեղինակը չի նշում ո՛չ Կոստանդնուպոլսի, ո՛չ Եփեսոսի աթոռները: Վերջինս, սակայն, ժամանակին (մինչեւ իր իրավունքները Կոստանդնուպոլսի աթոռին փոխանցելը) եղել է գլխավոր աթոռներից մեկը: Այս հանգամանքը կարող է նշանակել, որ տվյալ «Թուղթ»-ը կազմվել է 1204 թ. հետո, երբ խաչակիրները գրավեցին Կոստանդնուպոլիսը: Այսպես ենթադրում են որոշ մասնագետներ:[83] Դրանց հիշատակման բացթողումը կարող է միտումնավոր լինել, ինչպես դա արված է «Սեղբեստրոսի վարք»-ում (Կոստանդնուպոլիսը պարզապես չի նշվում):[84] Երկու դեպքում էլ բացատրությունը նույնն է՝ այդ կեղծ գրվածքների նպատակն է եղել ապացուցել, որ երկերը կազմվել են 4-րդ դարի սկզբում, երբ Կոստանդնուպոլիսը դեռ փոքրիկ Բյուզանդիոն էր, այլ ոչ աթոռանիստ մայրաքաղաք: Այսինքն՝ ճիշտ ժամանակաշրջան է ընտրված հնարավորինս նսեմացնելու Կոստանդնուպոլսի նշանակությունն ու շեշտելու Հռոմի առաջնությունը:

Ուսումնասիրության արդյունքում պարզվեց, որ սա միակ աղերսը չէ «Դաշանց թղթի» եւ «Վարք Սեղբեստրոս»-ի միջեւ: Ավելին, վերջինս (ըստ որում նաեւ դրա հունարեն տարբերակը) աղբյուր է ծառայել «Դաշանց թղթի» հեղինակի համար, ինչը չի նկատվել հետազոտողների կողմից: Օրինակ, մյուս աթոռների նկատմամբ Հռոմի եպիսկոպոսական աթոռի առաջնության, ընդարձակ կալվածքներ եւ արտոնություններ շնորհելու գաղափարները վերցված են «Վարք»-ից: «Թուղթ»-ը կրկնում է Սեղբեստրոսի վիշապին հաղթելու պատմությունը, հավելելով, որ Տրդատը նույնպես սպանել է մեկ այլ վիշապի:[85] Պատմելով Կոստանդնի հիվանդության մասին՝ «Թղթի» հեղինակը բորոտությունը անվանում է «ջեղափանդեան»[86]. հունարեն «Վարք»-ում ունենք

83 Հովհաննիսյան, 1957, էջ 70:

84 «Վարք»-ի հունարեն թարգմանությունը, հետևելով բնագրին ևս չի նշում Կոնստանդնուպոլիսը, սակայն խմբագրության մեջ, այսինքն՝ Փոքր Սոկրատում, այն առկա է (Մ. Տեր-Մովսեսեան, Սոկրատ, էջ 693):

85 Շահնազարեանց, 1862, էջ 19-20, ՄՄ, թիվ 2272, 224բ:

86 Շահնազարեանց, 1862, էջ 22, ՄՄ, թիվ 2272, 226բ:

*«ἐλεφαντικῇ»:*[87] *«Արիողկեանն կախարդք եւ Մարսիկեանն բժիշկք»*[88] *(հմմտ. հունարենը* οἱ μάγοι οἱ λεγόμενοι ἀρίολοι καὶ οἱ ἐπαοιδοὶ καὶ οἱ Μαρσικοὶ ἰατροί[89]*), բացասական նշանակություն ունեցող եւ բժիշկներին (որոնք չկարողացան բուժել Կոստանդնին) բնութագրող խրթին ու օտարոտի բառերը «Թղթում» փոխարինված են ավելի մեղմ իմաստ ունեցող «ճարտարքն ճեմարանին եւ սոփիստեայքն սոկրատեանք»,*[90] *այսինքն՝ «ճեմարանի ճարտարները եւ Սոկրատյան իմաստասերները» արտահայտությամբ:*

*Հեղինակն օգտվել է նաեւ «Վարք»-ի հայերեն թարգմանությունից եւ, մասնավորապես, դրա խմբագրությունից*[91]*: Այս դեպքում անհասկանալի է, թե ինչու նա չի փոխանցում այդ խրթին արտահայտությունը հայերեն «Վարք»-ից փոխ առնված բառերով: Բերենք եւս մեկ օրինակ, որն աներկբա է դարձնում «Դաշանց թղթի» հեղինակի հունարեն «Վարք»-ի իմացությունը: «Թղթում» վիշապի սպանությունը նկարագրելիս, ասված է. «Դարձեալ էր վիշապ մի մեծ վնասակար ի Կապետոլին...»*[92]*: Հունարեն «Սեղբեստրոսի վարք»-ում կարդում ենք. «* Ἦν δράκων παμμεγέθης ἐν τῷ Ταρπείῳ ὄρει, ἔνθα τὸ Καπετώλιον ἵδρυται»[93] *«Վարք»-ի հայերեն թարգմանության մեջ ունենք. «Վիշապ էր մեծ յույժ ի Տարսոն լերինն, յորում եւ տաճար գոյր նմա»:*[94] *«Վարք»-ի հայերեն թարգմանության խմբագրությունում. «Վիշապ էր մեծ յոյժ ի Տարսոն լերինն»*[95]*: «Կապետոլին»*[96] *բառը, որն առկա է թե՛ հունարեն «Վարք»-ում, թե՛ «Թղթում» բացակայում է «Սեղբեստրոսի վարք»-ի հայերեն թարգմանության եւ դրա խմբագրության մեջ: Բավական համոզիչ այս օրինակները թույլ են տալիս ենթադրել, որ «Թղթի» հեղինակն օգտվել է ինչպես*

---

[87] Combefis, p. 273. Հայերեն թարգմանությունն ունի՝ «եղափանտական» (Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 722), իսկ խմբագրությունը՝ «եղափանդական» (նույն տեղում), հմմտ. «եղեփանդական», Խոր., 1991, էջ 226:

88 Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 722, հմմտ. խմբագրությունը՝ «արիոկեան կախարդք եւ արիստոկեանն բժիշկք» (նույն տեղում):

[89] Combefis, p. 273.

[90] Շահնազարեանց, 1862, էջ 22, ՄՄ, թիվ 2272, 226բ:

91 Տե՛ս Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 696, 708-709, 714-715, ըստ որում «Դաշանց թղթում» արտացոլված տեղեկությունները հաճախ առկա են միայն Փոքր Սոկրատում (օրինակ, էջ 696):

92 Շահնազարեանց, 1862, էջ 22, ՄՄ, թիվ 2272, 224բ:

93 Combefis, p. 269.

94 Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 704-705:

95 Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 704-705, հմմտ. նաեւ «այսու յաղթեա՛յ» հայտնի արտահայտությունը, որ առկա է այստեղ (Շահնազարեանց, 1862, էջ 22, ՄՄ, թիվ 2272, 210բ) եւ «Սեղբեստրոսի վարքի» հայերեն թարգմանության մեջ (Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 715): Հունարենում այս հատվածը բացակայում է (տե՛ս Սարգիսեան, 1893, էջ ԼԳ): Խաչանեւ սյունի կամ խաչի նշանի երկնքում հայտնվելու առասպելի մասին եւ դրա արտացոլումը հայկական աղբյուրներում տե՛ս van Esbroeck, 1982, էջ 79-101:

96 Խոսքը Կապիտոլիում տաճարի մասին է:

*«Սեղբեստրոսի վարք»-ի հունարեն բնագրից, այնպես էլ «Կոստանդնի նվիրատվություն» երկից: Այլապես ինչ կերպ բացատրել «Դաշանց թղթում» հիշատակված հատվածների համընկնումը «Վարք»-ի հունարեն բնագրին և ոչ թե թարգմանությանը, և կամ ինչպե՞ս մեկնաբանել «Թղթի» և «Կոստանդնի նվիրատվության»* (Donatio Constantini) *միջև առկա նմանությունները:*

*Մյուս կողմից, «Թղթում» առկա են «Սեղբեստրոսի վարք»-ում բացակայող կամ չպահպանված տեղեկություններ*[97]*: Օրինակ, «Թղթում» Կոստանդին կայսրը, ի թիվս այլ թանկարժեք ընծաների, Տրդատին է նվիրում իր հոր գոտին.*

> *«Եւս և զանգին գօտի՛ հօրն իմ հզօրի՛ ածի ընդ մեջ Տրդատայ քաջի:»*[98]

*Հայերեն «Վարք»-ում այդ «անգին» գոտու փոխարեն առկա է «պարեգաւտ»-ը, որ Կոստանդը նվիրել էր Հեղինեին, և որի շնորհիվ նրա հավատարիմ ծառաները գտնում են Կոստանդին մանկանը:*[99] *Հունարենում այս տողերը չկան: Բացի այդ, խնդրո առարկա նախադասությունն առկա է հենց այն հատվածում,*[100] *որը Բ. Սարգիսյանը վերցրած է համարում «Վկայաբանութիւն Եւսիգնիոսի» երկից ու իր հրատարակության մեջ զետեղում է այդ «Վկայաբանության» համապատասխան հունարեն տեքստը*[101]*: Այսինքն՝ այս պատումը կարող էր վերցված լինել նաև հունական աղբյուրից:*

*Համենայն դեպս, պարզ է դառնում, որ «Դաշանց թղթի» քննությունը պետք է կատարվի ոչ միայն հայկական աղբյուրների, այլև ավելի լայն համատեքստում, ներգրավելով վավերական ու նշված նպատակների համար ստեղծված այլ կեղծ գրվածքներ: «Թղթի» սակավաթիվ ուսումնասիրողներն ուշադրություն չեն դարձրել այս հանգամանքներին և երկի հետ կապ ունեցող որոշ աղբյուրներին ու հետազոտություններին: Որոշակի աղբյուրներ նշվել են Շահնազարեանցի գրքում*[102] *և Մատթեոս կաթողիկոսի հոդվածներում*[103]*: Հարցին անդրադարձել ու այն լրջորեն քննարկել են Ա. Հովհաննիսյանն*[104] *ու*

---

97 Սարգիսեան, 1893, էջ ԼԳ, տե՛ս նաև էջ 15-27:

98 ՄՄ, թիվ 3078, 207ա:

99 «Եւ առաւատուն յարուցեալ եռ նմա զանկողնոյն պարեգաւտ մի ծիրանի», Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 709: «Ցուցեալ և զանկողնոյ նորա զվարձ, զոր ի գիշերին առ ի Կոստայ զպարեգաւտն ծիրանիս», Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 711:

100 Սարգիսեան, 1893, էջ 16:

101 Սարգիսեան, 1893, էջ 15-27:

102 Շահնազարեանց, 1862, էջ 64-111:

103 Դաշանց թուղթ, 1860(1), էջ 240-244:

104 Հովհաննիսյան, 1957, էջ 58-80:

Ռ. Թոմսոնը[105]: Այստեղ, ի հավելումն վերջին ուսումնասիրողի տեսակետի, նշենք անուշադրության մատնված մի քանի լրացուցիչ աղբյուրներ:

1) Ա. Հովհաննիսյանի ուշագրավ միտքն առ այն, որ մեզանում առկա է նույն վերնագիրը կրող մեկ այլ հին աղբյուր՝ ««Դաշինք Տրդատայ եւ Կոստանդինոսի եւ թեմ Առաքելոց վանաց Տարոնի», իբրեւ թե թարգմանված է 1080 թ. Զորտուանել Թոռնիկյանի հրամանով հունարեն բնագրից»[106] անտեսվել է: Հռոմ ուղևորության մասին այդ երկում պատմվում է Գրիգոր Լուսավորչի անունից, և պատմության հենքը, հիմնականում, նույնն է: Նշված է նաև, որ դաշինքը կնքվել է «Քրիստոսի արեամբն, .... զի անգրելի լիցի ուխտ եւ միաբանութիւն հայոց եւ ֆրանկաց, մինչեւ ի կատարած աշխարհի»: Ա. Հովհաննիսյանն արդարացիորեն նկատում է, որ «ֆրանկ» անվան հիշատակումը կասկածելի է դարձնում թարգմանության հարազատությունը»[107]:

2) Ստեփանոս ու Ներսես Մեծոփեցիները «Լանկ Թամուրի արշավանքը Հայաստան» երկում հիշատակել են Կոստանդնի ու Սեղբեստրոսի կողմից Տրդատին և Գրիգոր Լուսավորչին շնորհված արտոնությունները[108]:

3) Երրորդ աղբյուրը, որը հիշատակված չէ և ոչ մի տեղ, Ուրբանոս VIII պապին (sedit 1590) հղված Մովսես կաթողիկոսի նամակն է: Այդտեղ, ընդունելով պապի առաջնությունը, հայոց կաթողիկոսը ցանկություն է հայտնում վերանորոգելու Գրիգոր Լուսավորչի ու Սեղբեստրոս պապի միջև կնքված հին «սիրո և միաբանության դաշինքը»[109]:

4) Առկա է Եպիփանին վերագրվող, բացառապես հայերենով պահպանված մի կեղծ գրվածք, որում ընդարձակորեն քննված են Հռոմի ու Հայաստանի միջև կնքված դաշինքը և Տրդատի ու Գրիգոր Լուսավորչի ուղևորությունը Հռոմ և Երուսաղեմ:[110]

Ի դեպ, Երուսաղեմ կատարած այցի մասին Կիրակոս Գանձակեցու «Պատմության» մեջ կա ծավալուն մի պարբերություն, որի տվյալները բացա-

---

105 Thomson, 1997, pp. 277-289, Thomson, 2001, pp. 77-82.

106 Հովհաննիսյան, 1957, էջ 76:

107 Հովհաննիսյան, 1957, էջ 77:

108 Խաչիկյան 1995, էջ 283, 285:

109 Armeno-Turcica, Selected Studies. Ed. Schutz, Indiana University 1998, p. 288.

110 Երկի «դիվանագիտական» (diplomatic) հրատարակությունը առաջաբանով և լատիներեն թարգմանությամբ լույս է ածել Գ. Ֆրասսոնը (G. Frasson, Pseudo Epiphanii Sermo de Antichristo, Bibliotheca Armeniaca, 2, Venezia - S. Lazzaro 1976, pp. 20, 22, 24-26, 38-42, 54 etc.) Վենետիկի Մատենադարանի երկու ձեռագրերի հիման վրա: Առաջաբանում աշխատասիրողը գալիս է այն եզրակացության, որ այս կեղծ գրվածքը ստեղծվել է 1113/14-1149/50 թթ. (տե՛ս էջ LIV): Այս հրատարակության գրախոսությունը տե՛ս Հր. Բարթիկյան, գրախոսություն «G. Frasson, Pseudo Epiphanii Sermo de Antichristo, Bibliotheca Armeniaca, 2, Venezia - S. Lazzaro 1976», Լրաբեր, N 5, 1978 էջ 105-109:

*կայում են «Դաշանց թղթում» եւ Գանձակեցու երկից ավելի վաղ աղբյուրներում:*[111] *Այդտեղ թվարկված են Երուսաղեմի*[112] *այն կալվածքները, որոնք Կոստանդինը եւ Սեղբեստրոսը շնորհել են հայերին*[113]*: Նույն ավանդությանն է պատկանում Գրիգոր Լուսավորչի եւ Սեղբեստրոսի ուղեւորությունը Երուսաղեմ, որտեղ նրանք բաժանել են սրբավայրերը լատինների, հայերի եւ հույների միջեւ: Այդ սրբավայրերից շատերը ցայսօր հայերինն են:*

*5) Հնուց ի վեր գոյություն ունի նաեւ բանավոր ավանդապատում այդ տեղերը հայերի սեփականություն լինելու մասին: Ավանդության հետքերն առկա են եւ ոչ-հայերեն երկերում, որոնց հնարավոր աղբյուրը կարող են լինել կամ «Դաշանց թուղթ»-ը, կամ բանավոր ավանդազրույցները: 15-րդ դարի գերմանացի ճանապարհորդ Հանս Շիլդբերգերը, Հայաստան կատարած իր այցից հետո, հայտնել է մանրամասնություններ, որոնք բացակայում են «Դաշանց թղթում»: Նա օգտագործել է իր ճամփորդության ընթացքում լսած պատմվածքները եւ պատմազրույցները: 18-րդ դարի հայտնի գիտնական Շառլ Կոկելենը նույնպես հիշատակում է այդ ավանդությունը.*

*"Sane Armeniorum gens numero amplissima, as prope infinita; antiquitate et nomine celeberrima, Christianae Religionis studio et constantia supra universos Orientis Populos laudatissima, cum initio nascentis Ecclesiae gloriosis Apostolis Bartholomaeo et Thaddaeo docentibus, evangelicam degustasset Fidem, ac deinde Beati Silvestri Pontificis et Constantini Magni Imperatoris tempore, publico omnium consensu una cum Rege suo Tiridate (ita videtur dicendum) ut apud eos traditum est, recepisset, ac tanta praeterea veneratione, Pontificem Romanum omni tempore est prosecuta."*[114]

---

111 Կիրակոս Գանձակեցի, 1961, էջ 5, 11:

112 Տրդատի եւ Կոստանդնի Երուսաղեմ ուղեւորության մասին տե՛ս նաեւ Վարդան Վարդապետ Բարձրբերդցի, Սոփերք, V, 1853-1861, Գրիգոր Լուսավորիչ, էջ 78-79.

113 Thomson, 1997, pp. 285-286.

114 Carolus Cocquelines, Bullarium, Romae 1747, IV, 78-80. «Իհարկե հայերի ազգը, թվով այնքան բազմաթանակ [բառացիորեն՝ ամենաշատ] է, որ համարյա անսահման է: Այդ հնագույն եւ ամենահամբավավոր անուն ունեցող, Քրիստոնեական կրոնի վարդապետությունը եւ հաստատությունը [անսասանությունը] բոլոր արեւելյան ժողովուրդներից ամենաշատ փառաբանող (ազգին), Եկեղեցու ծննդյան սկզբից ուսուցանեցին փառավոր Բարթողոմեոսը եւ Թադեոսը ու նրանց ավետարանչական հավատը հայտնի դարձավ, իսկ հետո երանելի Սեղբեստրոս Պապի եւ Կոստանդին Մեծ կայսրի ժամանակներին, պետական դաշինք կնքվեց [ընդունվեց] նրանց թագավոր Տրդատի (կարծես թե այսպես պետք է ասել) հետ, ինչպես որ հենց իրենց միջավայրում է ավանդված, որին մշտապես (բառացի՝ բոլոր ժամանակներում) այնքան հարգանքով հետեւել է Հռոմի Պապը»: Այս հատվածին հետեւում են էլ ավելի գովասանական բառեր հայերի հասցեին. "*.... nulla Natio, nullus Populus promptius, alacriusve eis (sc. Cruciatis) suppetias tulit, quam Armenii, qui viris, equis, armis, commeatu, consilio, ac denique omni ope Christianos sacro*

Խնդրո առարկա հարցով զբաղվող հետազոտողները, համակարծիք լինելով «Դաշանց թղթի» կեղծ բնույթի վերաբերյալ, միաբան չեն ավանդության վավերական լինելու հարցի շուրջ: Վաղ պատմագրությանը բնորոշ ավանդագրույցներով պաճուճված այդ պատումը, հետագայում ավելացրած ընդմիջարկությունները եւ, ընդհանրապես, խնդրի քաղաքական բնույթը չեն խոսում հօգուտ ավանդության վավերականությանը: Հարցը սակայն չի սահմանափակվում միայն դաշինք կնքելու կամ չկնքելու խնդրով:

Այդքան էլ պարզ չէ, 3-րդ դարի վերջում եւ 4-րդ դարի սկզբում ի՞նչ հարաբերություններ կամ կապեր են եղել Հայաստանի եւ Հռոմի միջեւ: Թերեւս արդարացի է կարծել, որ այդ ժամանակաշրջանում Հայաստանի եւ Հռոմի միջեւ որոշ հարաբերություններ եղել են, որոնց հետքերը պատմականորեն փաստված են: Որպես 297 թվի հաջող ճակատամարտի արդյունք, հայկական եւ հռոմեական բանակները միասին ջախջախել են պարսիկներին եւ 298 թ. Մծբինում ստորագրել 40 տարվա խաղաղության պայմանագիրը:[115] Հռոմը նկատելիորեն թուլացած էր, իսկ Պարսկաստանը գնալով հզորանում էր, ուստի, Հայաստանի հետ դաշնակցությունը խիստ անհրաժեշտ էր Հռոմին: Հայաստանը՝ պաշտոնապես առաջին քրիստոնյա պետությունը, 4-րդ դարի սկզբում պետք է ունենար բավականին սերտ կապեր Հռոմի հետ՝ մինչեւ դավանաբանական (իմա՞ քաղաքական) հարցեր ծագելը: Եվ իրոք, հռոմայեցիներն էին, որ սատարեցին Գրիգոր Լուսավորչին ու Տրդատ արքային:[116] Հաշտության այդ տարիներին Հայաստանը խաղաղ եւ ծաղկուն շրջան է ապրել, ինչը նշել են անգամ ոչ-հայագետները. Կոլեմանը, օրինակ, գրում է.

«Հայաստանում, Կոստանդնի օրոք Տրդատի իշխանությունը ազգային փառավոր վերածննդի շրջան էր: Այդ ժամանակ, ինչպես եւ ապագայի որոշ հատվածում Հռոմեական կառավարությունն աջակցում էր հայկական թագավորությանը՝ դիմագրելու պարսիկներին, եւ երկիրը, իր վերջնական քաղաքական բաժանումից առաջ, շունչ քաշելու ժամանակաշրջան ունեցավ:»[117]

Հարկ է ընդգծել նաեւ, որ Հայաստանում եւ Հռոմում քրիստոնեությունը

---

*illo in bello fortissime ac fidelissime iuverant.*" «...եւ՛ ոչ մի ազգ, եւ՛ ոչ մի ժողովուրդ ավելի անխոնջ, ավելի պատրաստակամ չէ սատարելու տանջանքներին ինչպես հայերը, որոնք արամբք, այրուձիով, զենքով, ճանդերձանքով եւ պարենով, խորհրդով, եւ ընդհանրապես ամեն ինչով խիզախ եւ ճավատարիմ կերպով օգնեցին Քրիստոնյաներին այս սրբազան պատերազմում»:

115 Աղոնց, 1970, էջ 349:

116 Ինչպես հայտնի է, կաթողիկոսի աթոռի համար եղել է եւս մեկ թեկնածու՝ Ալբիանոսը:

117 Ch.B. Coleman, Constantine the Great and Christianity, Studies in History, Economics and Public Law, NY 1914, p. 157.

*զարգացել է նույն համատեքստում: Սեղբեստրոս պապի*[118] *օրոք ստեղծված առաջին վկայաբանությունները եւ նահատակների նշխարների վրա կառուցված վկայարաններն ու եկեղեցիները պատմական, վավերական փաստեր են համարվում: Այս տեղեկությունները առաջին անգամ վկայակոչված են «Սեղբեստրոսի վարք»-ի հունարեն տարբերակում*[119]*: Համանման, բայց ավելի մանրաքնին տեղեկություններ է պարունակում Ագաթանգեղոսի երկը՝ սուրբ Հռիփսիմյանց կույսերի վկայարանների վերաբերյալ:*[120] *Ավելին. 4-րդ դարի սկզբին Հայաստանում ու մերձակա շրջաններում նահատակների մասին տվյալներն ավելի հարուստ են: Հիշենք նաեւ «Վարք Սեղբեստրոսի» լատիներեն բնագրի հիշատակումը Հայաստանի մասին* (per Aegyptum, sub civitatem Armenia), *քառասուն կույսերի Հռոմից Հայաստան ժամանելը (Ագաթանգեղոսն ինքն էլ Հայաստան է եկել Հռոմից): Արդյոք դրանք փաստեր չե՞ն, որ վկայում են Հայաստանի եւ Հռոմի միջեւ հնարավոր հարաբերությունների մասին:*

*Արդ, Հռոմի հետ «սիրո եւ միաբանության» դաշինք կնքած եւ պաշտոնապես քրիստոնեության հռչակման առաջնությունը ձեռք բերած (ինչն աներկբայորեն վկայակոչված է Սոզոմենոսի կողմից*[121]*) Հայաստանն այդ ժամանակ դեռեւս բավականին հզոր պետություն էր: Սա է պատճառը, որ հետագայում այդ փառահեղ ժամանակների մասին հիշողությունը պարբերաբար «վերակենդանացվել» է, եւ, գրանցված ստույգ փաստեր չունենալու հետեւանքով, ստեղծվել են այդ իրադարձությունները հաստատող կեղծ երկեր:*

[118] Ի դեպ, նշված պապերի անունների ընդգրկումը *«Կնիք հաւատոյ»*-ի ցանկում եւս յուրովի ապացույց կարող է ծառայել հօգուտ Հռոմի ու Հայաստանի միջեւ եղած հարաբերությունների:
119 Combefis, p. 261, 287, Մ. Տեր-Մովսէսեան, Սոկրատ, էջ 695-696, 747:
120 Ագաթանգեղոս, 1983, էջ 426-428:
[121] Sozomenus. Kirchengeschichte. J. Bidez, G. Ch. Hansen, Berlin1960, S. 149.